Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք:

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 13 ՀՈՒԼԻՍ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78




# ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունիսյան պլենումը, որը տեղի ունեցավ մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում, Կրեմլի Մեծ պալատում, ավարտեց իր բեղմնավոր աշխատանքը։ Պլենումը հանգամանորեն քննարկեց արդյունաբերության և շինարարության մեջ տեխնիկական առաջադիմությունն արագացնելու մասին ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների կատարման ուղղությամբ պարտիական ու սովետական կազմակերպությունների և ժողովրդական տնտեսության խորհուրդների աշխատանքի հարցը, ինչպես նաև քիմիական արդյունաբերության զարգացումն արագացնելու և տեքստիլ արդյունաբերության հետագա վերելքի միջոցառումների հարցերը։

Պլենումի աշխատանքներին ՍՄԿՊ Կենտկոմի անդամների ու թեկնածուների հետ



միասին մասնակցում էին նաև միութենական ռեսպուբլիկաների կոմպարտիաների կենտկոմների, պարտիայի մարզկոմների, երկրկոմների, մի շարք քաղկոմների ու ձեռնարկությունների պարտկոմների քարտուղարներ, սովետական կազմակերպությունների ու ժողտնտխորհների ղեկավարներ, արհմիությունների, կոմերիտմիության ղեկավար աշխատողներ, ձեռնարկությունների, գիտահետազոտական ինստիտուտների ղեկավարներ, արտադրության նորարարներ։

Պլենումում զեկուցումներով հանդես եկան Մոսկվայի քաղաքային ժողտնտխորհի նախագահ Կ. Դ. Պետուխովը, Լենինգրադի ժողտնտխորհի նախագահ Ս. Ա. Աֆանասևը, Ստալինոյի ժողտնտխորհի նախագահ Ի. Ի. Դյադիկը, Սվերդլովսկու ժողտնտխորհի նախագահ Ս. Ա. Ստեպանովը, Դնեպրոպետրովսկու ժողտնտխորհի նախագահ Ն. Ա. Տիխոնովը, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Քիմիայի պետական կոմիտեի նախագահ Վ. Ս. Ֆյոդորովը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահի տեղակալ և ՍՍՌՄ Պետպլանի նախագահ Ա. Ն. Կոսիգինը։

Կենտրոնական Կոմիտեի պլենումին տրված զեկուցումներից ամենայն պարզությամբ երևում են այն վիթխարի հաջողու-



թյունները, որ ձեռք են բերել մեր երկրի աշխատավորներն անշեղորեն կենսագործելով ՍՄԿԿ XXI համագումարի պատմական որոշումները։ Մոսկվայի քաղաքային ժողտնտխորհի ձեռնարկություններում անցյալ տարի տեղակայվել են 142 ավտոմատ ու մեքենայացված հոսքային գծեր, ավելի քան 1.600 ավտոմատ ու կիսաավտոմատ հաստոցներ, մոդեռնացված է 3 հազար միավոր սարքավորում, արմատավորվել են մեծ թվով ամբարձիչ-փոխադրական հարմարություններ։ Ավելի քան 300 հազար մարդ մասնակցել է ձեռնարկություններում տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման ու մեքենայացման պլանների մշակմանը։

Լենինգրադի տնտեսական շրջանի արդյունաբերությունը հունիսի 23-ին ժամկետից շուտ ավարտեց առաջին կիսամյակի պլանի կատարումը։ Շոգետուրբինների թողարկմամբ Լենինգրադի արդյունաբերությունը գտնվում է եվրոպական տեխնիկայի մակարդակի վրա, բայց դեռ փոքր ինչ ետ է մնում ԱՄՆ-ից։ Այժմ Լենինգրադում ավարտվում է 300 հազար կիլովատանոց նոր շոգետուրբինների աշխատանքային նախագծումը և ստեղծվում են 400—500 և 600 հազար կիլո-

վատանոց տուրբինների մի ագրեգատում, որի շոգին բարձր և գերբարձր պարամետրերի է լինելու։ Այսպիսով, կվերացվի շոգետուրբինների կարողության ու պարամետրերի որոշ ետ մնալը ԱՄՆ-ից։ Աշխատանքներ են տարվում ստեղծելու 300 հազար կիլովատանոց գեներատոր, որը կապահովի հայրենական մեքենաշինության այդ տեսակի առաջատար տեղը համաշխարհային տեխնիկայում։ Լենինգրադի կողմից թողարկվող հիդրավլիկ տուրբինները գերազանցում են արտասահմանյան ֆիրմաների լավագույն նմուշները։ Այսպես, օրինակ, Կույբիշևի հիդրոէլեկտրակայանի համար պատրաստվող դարձաթիակավոր տուրբինները ամենահզոր տուրբիններն են աշխարհում։

Աննախընթաց հաջողությունների է հասել ինդուստրիալ Դոնբասը։ Ստալինոյի ժողտնտխորհի ձեռնարկությունների աշխատողները ջերմորեն պաշտպանելով վլադիմիրցիների և երկրի առաջավոր մյուս կոլեկտիվների հայրենասիրական նախաձեռնությունը արտադրության 1965 թվականի մակարդակին ժամկետից շուտ հասնելու առթիվ, որոշել են 1963 թվականին հասնել չուգունի, պողպատի, գլանվածքի արտադրության և ածխի արդյունահանման 1965 թվա-



կանի համար նախատեսված մակարդակին։ Գործող քիմիական ձեռնարկություններում յոթնամյակի վերջի համար նախատեսված արտադրության մակարդակը ձեռք կբերվի 1964 թվականին, ցեմենտի թողարկումը 1962 թվականին և այլն։ Լուծելով ածխի արդյունահանման կոմպլեքսային մեքենայացման հարցերը նախատեսվում է յոթնամյակի ընթացքում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 33,7 տոկոսով, որ 3,7 անգամ ավելի է 1952—1958 թվականներին ձեռք բերված աճի տեմպերից։

Խոշոր հաջողությունների են հասել Ուրալի աշխատավորները (Սվերդլովսկու ժողտնտխորհ)։ Նրանք ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումը դիմավորեցին առաջին կիսամյակի համախառն արտադրանքի պլանը ժամկետից շուտ կատարելով։ Ինչպես հայտնի է, Ուրալը Ռուսաստանի ֆեդերացիայում պահպանում է սև, գունավոր մետաղների ու ծանր մեքենաշինության արտադրության առաջատար տեղը։ Ուրալի ձեռնարկություններում վերջին երկու տարում համախառն արտադրանքի թողարկումն աճել է 20 տոկոսով։ Նախատեսվում է յոթնամյակում ստեղծել 1.200 բարձր արտա-

դրողական նոր մեքենաներ, սարքեր և ապարատներ։

Մեր երկրի ծանր ինդուստրիայի զարգացման գործում քիչ աշխատանք չեն կատարում Դնեպրոպետրովսկու ժողտնտխորհի ձեռնարկությունները՝ արտադրելով չուգուն, պողպատ, գլանվածք, երկաթ, մարգանեցի հանքաքար, մեքենաներ և այլն։

Տեխնիկական առաջադիմության գործում զգալի ավանդ են մուծել ռացիոնալիզատորներն ու գյուտարարները։ Միայն անցյալ տարի նրանք 50 հազար առաջարկություն են արել, որից 30 հազարն արմատավորել արտադրության մեջ, որը երկրին 175 միլիոն ռուբլու խնայողություն է տվել։ Այս տարվա չորս ամսում ժողտնտխորհի ձեռնարկություններում մեկ աշխատողին ընկնող արտադրանքն ավելացել է ավելի քան 5 տոկոսով։ Մեծ հաջողություններ են ձեռք բերված հանքերում և մետալուրգիական ձեռնարկություններում նոր տեխնիկայի ու առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման գործում։

Պարտիայի համագումարից հետո հայրենական քիմիական արդյունաբերությունը բուռն վերելք է ապրում։ ՍՍՌՄ քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները 1958 թվականին համախառն արտադրան-



քի արտադրության պլանը կատարեցին 104 տոկոսով, դրա թողարկումը նախորդ տարվա համեմատությամբ ավելացնելով 15 տոկոսով։ Այս տարվա հինգ ամսում անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ քիմիական արտադրանքի արտադրությունը ավելացել է 11 տոկոսով։ Զգալիորեն աճել է պլաստմասսայի, սինթետիկ նյութերի, սինթետիկ էթիլային սպիրտի, ավտոդողերի, սինթետիկ յուղաթթուների արտադրությունը։ Ընդլայնվել է քիմիական արդյունաբերության գիտահետազոտական և նախագծային բազան։ Ստեղծվել են գիտահետազոտական 9 ինստիտուտ և ինստիտուտների 11 ֆիլիալ։ Կազմակերպվել են նախագծային նոր ինստիտուտ և գոյություն ունեցող նախագծային ինստիտուտների 14 ֆիլիալ։

Բարձր զարգացման է հասել մեր երկրի տեքստիլ արդյունաբերությունը, որի արտադրանքը կազմում է երկրի արդյունաբերության ամբողջ համախառն արտադրանքի մոտավորապես տասներորդ մասը։ Ավելի քան երկու հազար ձեռնարկություններում աշխատում են 1 միլիոն 300 հազարից ավելի բանվորներ, ինժեներա-տեխնիկական աշխատողներ և ծառայողներ։ 1958 թվականին

գործվածքների թողարկումը մեր երկրում հասավ գրեթե 7,5 միլիարդ մետրի։ Ներկայումս մեզանում ավելի շատ գործվածքներ են արտադրվում, քան աշխարհի ուզած երկրում, բացի ԱՄՆ-ից։

Անշեղորեն կենսագործելով ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները խոշոր հաջողությունների է հասել նաև մեր ռեսպուբլիկան։ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը ժամկետից շուտ, այս տարվա հունիսի 23-ին կատարեց 1959 թվականի համախառն արտադրանքի արտադրության կիսամյա պլանը։ Մտնելով յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու համաժողովրդական սոցիալիստական մրցության մեջ, Հայաստանի արդյունաբերության աշխատողները պարտավորություն են ստանձնել 1964 թվականին հասնել արդյունաբերության արտադրության թողարկման այն մակարդակին, որը նախատեսված է յոթնամյակի վերջի համար։ Էլեկտրատեխնիկական արդյունաբերության աշխատողները պարտավորվել են յոթնամյա պլանը կատարել 2 տարի շուտ։ Նման պարտավորություններ ստանձնել և այժմ հաջողությամբ կատարում են մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների բազմաթիվ կոլեկտիվներ։ Հայտնաբերված



են համարյա 60 հազար քառակուսի մետր արտադրական տարածություններ, որոնք չեն օգտագործվում կամ անբավարար են օգտագործվում։ Այդ տարածություններում կազմակերպվում են նոր արտադրություն։ Ռեսպուբլիկայի քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների կոլեկտիվները գտել են արտադրանքի թողարկումն ավելացնելու ներքին ռեզերվներ։ Առանց լրացուցիչ կապիտալ ներդրումների հնարավոր եղավ ավելացնել սինթետիկ կաուչուկի, կաուստիկ սոդայի, քացախաթթվի, սինթետիկ կորունդի, ավտոդողերի, ռետինատեխնիկական և մյուս արժեքավոր քիմիական ապրանքների ու նյութերի թողարկումը։ Կրճատվեցին նաև մի քանի նոր արտադրության շահագործման հանձնելու ժամկետները։

Պլենումը գոհունակությամբ նշեց, որ արդյունաբերության համախառն արտադրանքի թողարկման հնգամյա պլանը երկրում ամբողջությամբ վերցրած կատարվեց 105 տոկոսով։ Միութենական բոլոր ռեսպուբլիկաներն ու ժողտնտխորհները հաջողությամբ կատարում են արդյունաբերական արտադրանքի թողարկման առաջադրանքները։ 1958 թվականի համապատասխան

ժամանակամիջոցի համեմատությամբ արդյունաբերական արտադրության ծավալը 1959 թվականի հունվար-մայիսին մեծացավ 11 տոկոսով։ Ամբողջությամբ վերցրած, ժողովրդական տնտեսության կապիտալ ներդրումների ծավալն անցած հինգ ամիսներին 1959 թվականի համապատասխան ժամանակամիջոցի համեմատությամբ, մեծացավ 9 տոկոսով, իսկ շինարարական-մոնտաժային աշխատանքների ծավալը՝ 14 տոկոսով։ Մի բանվորի հաշվով 1959 թվականի անցած հինգ ամսում աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ աճեց 8 տոկոսով և շինարարության մեջ՝ 9 տոկոսով։

Այս բոլորը նկատի ունենալով պլենումը նշեց, որ պարտիայի XX համագումարից հետո անցած ժամանակաշրջանում մեր երկրում մի նոր, խոշոր քայլ արվեց ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման և տեխնիկական կատարելագործման ասպարեզում։ Այդ ժամանակամիջոցում ստեղծվեցին և սերիական արտադրությամբ յուրացվեցին ավելի քան 5 հազար նոր, առավել կատարյալ տիպի մեքենաներ, մեխանիզմներ, ապարատներ և սարքեր, մշակվեցին և մեծ մասշտաբներով արդյու-



նաբերության և շինարարության մեջ արմատավորվեցին առաջադիմական տեխնոլոգիական պրոցեսներ, զգալիորեն բարձրացավ մեքենայացման, առանձնապես ծանր ու աշխատատար աշխատանքների բազմաթիվ արտադրական օպերացիաներ արդյունաբերական ձեռնարկություններում, շինարարական ինդուստրիայում և տրանսպորտում։

Նկատի ունենալով, որ ժողովրդական տնտեսության մեջ տեխնիկական առաջադիմության համար մղվող պայքարը յոթնամյա պլանի հաջող կատարման վճռական պայմանն է, պլենումը խնդիր դրեց ավելի լայնորեն ծավալել աշխատանքը հետագա տեխնիկական առաջադիմության բնագավառում, վճռական պայքար մղել տեխնիկական պահպանողականության, պետական շահերի նկատմամբ անտարբեր վերաբերմունքի և անկարգապահության դրսևորումների դեմ, բարձրացնել ձեռնարկությունների և կառույցների գիտական, նախագծային և կոնստրուկտորական կազմակերպությունների ղեկավարների պատասխանատվությունը նոր տեխնիկայի մշակման և յուրացման առաջադրանքները ժամանակին կատարելու համար, արտադրության

տեխնիկական կատարելագործման բնագավառում զարգացնել բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների և գիտնականների նախաձեռնությունը։

Պլենումը նոր ուղիներ նշեց բարձր արտադրողական տեխնոլոգիական պրոցեսների, նոր մեքենաների, մեխանիզմների, սարքերի ստեղծման և արտադրության մեջ դրանց արմատավորման, շենքերի ու կառույցների ռացիոնալ տիպերի մշակման գիտահետազոտական ու փորձնական աշխատանքների կազմակերպման ասպարեզում, նոր տեխնիկայի բնագավառում կատարվող աշխատանքների պլանավորման և ֆինանսավորման գործում եղած թերությունները վերացնելու համար։ Պլենումը սահմանեց, որ համապետական նշանակություն ունեցող նոր տեխնիկայի ստեղծման ու արմատավորման բնագավառում կարևորագույն աշխատանքների առաջադրանքները պետք է լինեն ժողովրդատնտեսական պլանի օրգանական բաղկացուցիչ մասը։

Գործող ձեռնարկությունների վերակառուցումը, ընդլայնումը և տեխնիկական վերազինումը համարելով ժողովրդատնտեսական կարևորագույն խնդիր, պլենումը հավանություն տվեց Վլադիմիրի և Սվերդլովսկու



մարզերի, Մոսկվա քաղաքի, Մոսկվայի, Լենինգրադի, Գորկու, Զապորոժյեի, Դնեպրոպետրովսկու և ուրիշ մարզերի, Բելոռուսական ՍՍՌ-ի աշխատավորների, պարտիական ու տնտեսական կազմակերպությունների նախաձեռնությանը, որի նպատակն է հնարավորություն գտնել արագորեն ավելացնելու արտադրանքի թողարկումը, իջեցնելու նրա ինքնարժեքը, բարձրացնելու թողարկվող մեքենաների, սարքերի, սարքավորումների տեխնիկական մակարդակը և աշխատանքի արտադրողականությունը յոթնամյա պլանի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու ի հաշիվ գործող ձեռնարկությունների արտադրական կարողությունների լավագույն օգտագործման և վերակառուցման։ Պահանջվում է վերակառուցվող արտադրական ձեռնարկություններում արմատավորել տեխնոլոգիական նոր պրոցեսներ, այդ թվում արտադրության պրոցեսների վերահսկման և գիտական հետազոտությունների մեջ ռադիոակտիվ իզոտոպների և արտադրության կազմակերպման առաջավոր մեթոդների օգտագործումը, հնացած սարքավորումների մոդեռնացումն ու փոփոխումը, ագրեգատների ու սարքերի առավելագույն տեղաբաշխումը բաց հրա-

պարակներում, հումքի նոր, առավել արդյունավետ տեսակների օգտագործումը՝ նրա կոմպլեքսային վերամշակմամբ հանդերձ։ Այդ կապակցությամբ պլենումը կոնկրետ նշեց, թե ինչպիսի տեխնոլոգիական պրոցեսներ և կատարելագործումներ պետք է հատկապես լայն կիրառում ստանան սև մետալուրգիայի, գունավոր մետալուրգիայի, քիմիական արդյունաբերության, նավթի և գազի արդյունաբերության, ածխարդյունաբերության, լեռնահանքային արդյունաբերության, մեքենաշինության, շինարարության, թեթև և սննդի արդյունաբերության թղթի և փայտամշակման արդյունաբերության մեջ ու տրանսպորտում։

Հաշվի առնելով, որ արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման հիմքն է, պլենումը պահանջել է ուշադրությունը կենտրոնացնել ձեռքի ծանր աշխատանքը վերացնելու վրա։ Որոշման մեջ թվարկված են աշխատատար այն պրոցեսները, որոնք առաջիկայում պետք է ենթարկվեն կոմպլեքսային մեքենայացման։ Օրինակ, գլանվածքի, խողովակների և մետաղյա իրերի արտադրությունը, հանքաքարի և ապարի հա-



վաքումը, արտադրանքի տեսակավորումը, օժանդակ աշխատանքները և այլն։

Պլենումը քննարկել և ծավալուն որոշում է ընդունել նաև ժողովրդական տնտեսության մասնագիտացման ու կոոպերացման հետագա զարգացման մասին։

Ինչպես հայտնի է, միշտ էլ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հատուկ հոգատարություն են ցուցաբերել մեր երկրում գիտության ու բարձրագույն կրթության զարգացման նկատմամբ։ Մեր երկրում բոլոր անհրաժեշտ պայմաններն ստեղծված են գիտության ու տեխնիկայի ստեղծագործական զարգացման համար։ Հենց այդ նկատի ունենալով պլենումը խորիմաստ որոշում ընդունեց տեխնիկական առաջադիմության գործում գիտության դերը բարձրացնելու, արտադրության մեջ գիտության նվաճումների արմատավորումը արագացնելու վերաբերյալ։

Պլենումը քննարկելով պարտիական կազմակերպությունների խնդիրները տեխնիկական առաջադիմության համար մղվող պայքարում, պահանջեց աշխատավորներին խորապես պարզաբանել կոմունիստական շինարարության ասպարեզում տեխնիկական առաջադիմության հսկայական նշանա-

կութjունը, ծավալել գիտության և տեխնիկա-
յի նվաճումների պրոպագանդան, դրա համար
լայնորեն օգտագործելով մամուլը, կինոն,
ռադիոն և հեռուստատեսությունը։
Գիտատեխնիկական պրոպագանդան յու-
րաքանչյուր բանվորի, ինժեներա-տեխնի-
կական աշխատողի պետք է օգնի բարձրաց-
նելու իր գիտելիքները և գործնական որա-
կավորումը, նպաստի տեխնիկական առա-
ջադիմության արագացմանը, աշխատանքի
արտադրողականության բարձրացմանը։
Ավարտելով իր աշխատանքները ՍՄԿՊ
Կենտրոնական Կոմիտեի պլենումը ընդու-
նեց ԴԻՄՈՒՄ՝ ուղղված Սովետական Միու-
թյան բանվորներին ու բանվորուհիներին,
կոլտնտեսականներին ու կոլտնտեսուհինե-
րին, սովետական ինտելիգենցիային, բոլոր
աշխատավորներին, կոչ անելով հերոսական
աշխատանքով կառուցել կոմունիզմի հոյա-
կապ շենքը։
Սովետական ժողովուրդը սիրով և երախ-
տագիտությամբ է արձագանքում հարազատ
Կոմունիստական պարտիայի կոչին՝ ցուցա-
դրելով իր կուռ համախմբվածությունը
պարտիայի շուրջը, իր անհողդողդ կամքը
ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որո-
շումները կենսագործելու, իր անձնվեր
պատրաստակամությունը կոմունիզմի կա-
ռուցման մեծ գործի համար։

---

## ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՎԱՃՈՒՄՆԵՐԻ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԸ

Հունիսի 16-ին, Մոսկվայում, հանդիսա-
վոր կերպով բացվեց ՍՍՌՄ ժողովրդական
տնտեսության նվաճումների ցուցահանդեսը։
Ցուցահանդեսի բացման առթիվ ժողո-
վուրդների բարեկամության հրապարակում
տեղի ունեցավ բազմամարդ միտինգ, որ-
տեղ հազարավոր այցելուների հետ ներկա
էին գտնվում Կոմունիստական պարտիայի
և Սովետական կառավարության ղեկավար-
ները։ Միտինգում ընդարձակ ճառով հան-
դես եկավ ՍՄԿՊ Կենտկոմի Առաջին քար-
տուղար, ՍՍՌՄ Մինիստրների Սովետի Նա-
խագահ ընկեր Ն. Ս. Խրուշչովը, որին ներ-
կաները դիմավորեցին ջերմությամբ։
Խոսելով ցուցահանդեսի կատարելիք դերի
և նշանակության մասին, ընկեր Ն. Ս. Խրուշ-
չովն ասաց.
«Ցուցահանդեսը պետք է դառնա ժողովր-
դական տնտեսության նորագույն նվաճում-
ների ուսումնասիրության և տարածման լավ
դպրոց, նա պետք է կոնկրետ օրինակներով



արտացոլի տեխնիկական առաջադիմության մակարդակը և ուղիները, ցույց տա աշխատանքի և արտադրության կազմակերպման առաջավոր մեթոդները, հողագործության և անասնաբուծության կուլտուրան»։

Հայտնի է, որ ցուցահանդեսի ներկա տերիտորիայում տարիներ շարունակ գործում էր արդյունաբերական, շինարարական և գյուղատնտեսական ցուցահանդեսները։

Ելնելով ցուցահանդեսի առջև դրված ավելի լայն խնդիրներից, պարտիան ու կառավարությունը որոշեցին այս տարվանից վերածել այն ժողովրդական տնտեսության նվաճումների մշտապես գործող միասնական ցուցահանդեսի։

Ցուցահանդեսում ներկայացվել է այն լավագույնը, ինչ ստեղծել է սովետական ժողովուրդը վերջին շրջանում։ Ցուցահանդեսի հազարավոր էքսպոնատները վկայում են մեր բանվորների, կոլտնտեսականների, ինժեներների, գիտնականների ստեղծագործ աշխատանքի մասին, նրանց հայրենասիրական գործունեության մասին։

Ցուցահանդեսում ներկայացված են տասնյակ հազարավոր ամենաբազմապիսի էքսպոնատներ, որոնք բացահայտում են ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառ-



ների հաջողությունները։ Այստեղ կարելի է տեսնել երկրի արհեստական արբանյակների մոդելները, ծրագրային կառավարմամբ հաստոցներ, ժամանակակից գյուղատնտեսական ու շինարարական մեքենաներ, հանքային սարքավորումներ, ավտոմատ գծեր, էլեկտրոնային նոր տեխնիկա, ժողովրդական սպառման առարկաներ։ Ցույց են տրված արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, գյուղատնտեսության, գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի բնագավառներում մեր ձեռք բերած հսկայական նվաճումները։

Ատոմն օգտագործել խաղաղ նպատակներով— այսպիսի նշանաբանով է զարդարված այն պավիլիոնը, որը նվիրված է գիտության այդ բնագավառի նվաճումներին, որոնք ձեռք են բերվել մեր երկրում։ Բերված թվերը պարզ կերպով ասում են այն մասին, որ ՍՍՌՄ-ի աշխարհում առաջին ատոմային կայանն այցելել են 66 երկրների 4.135 գիտնականներ և մասնագետներ և ավելի քան 2.200 հասարակական գործիչներ։ Ատոմը խաղաղ նպատակներով օգտագործելու սովետական ցուցահանդեսներ են կազմակերպվել 22 երկրներում, որտեղ այցելել են ավելի քան 5 միլիոն մարդ։

Պավիլիոնում մի ամբողջ պատ է ներկայացնում 10 միլիարդ էլեկտրոնավոլտ էներգիայի ատոմային հսկայական մեքենայի սինքրոֆազատրոնի աշխատանքի սխեման։ Այդ մեքենան ստեղծել են սովետական գիտնականները։ Պավիլիոնի սրահներից մեկը այցելուներին ծանոթացնում է խաղաղ նպատակներով ջերմամիջուկային էներգիան օգտագործելու բնագավառում սովետական գիտության ձեռք բերած նվաճումները։ Այստեղ բավականին տեղ է զբաղեցնում իմպուլսային ջերմամիջուկային կայանը, որը գտնվում է ապակե միջնորմից այն կողմ։

Անցյալ տարվա համեմատությամբ ատոմային էներգիայի օգտագործման հարցին նվիրված ցուցահանդեսը կրկնակի չափով ընդարձակվել է։

Ցուցահանդեսի թեթև արդյունաբերության պավիլիոնի սրահներում ցուցադրված են ժողովրդական լայն սպառման ապրանքներ՝ կանացի և տղամարդկանց հագուստեղեն, որ արտադրել են Մոսկվայի, Ռիգայի, Կիևի, Լենինգրադի և Նովո-Սիբիրսկի մոդելների տները։

Այստեղ կարելի է տեսնել տարբեր տեսակի շքեղ շրջազգեստներ ու կոստյումներ, զգեստներ՝ տանը և ծովափին հագնելու հա-



մար և աշխատանքային արտահագուստներ։ Մեծ տեղ են բռնում բազմատեսակ ու գեղեցիկ գործվածքները, տարբեր գույների կաշիներն ու կոշիկները։ Առանձին տեղ է հատկացված արհեստական կաշվի զարգացմանը, որը մինչև այժմ քիչ էր օգտագործվում արդյունաբերության մեջ։ Սովետական գիտնականներին ու ինժեներներին հաջողվել է ստեղծել օդ թափանցող արհեստական կաշի, որը ներկայումս լայն կիրառում է գտնում ամենուրեք։

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի (1958 թ.) որոշումից հետո լայն զարգացում է ստացել արհեստական թելերի արտադրությունը։ Յոթնամյակի վերջում այդ թելերի արտադրությունը կաճի 4 անգամ, իսկ դրանց առավել արժեքավոր տեսակներինը՝ սինթետիկ թելերինը՝ 12—13 անգամ։ Դրանց զգալի մասը կխառնվի բամբակի ու բրդի հետ, որը կհարստացնի գործվածքների ասորտիմենտը և կբարելավի դրանց որակը։ Այցելուների ուշադրությունն է գրավում արհեստական թելերից պատրաստված գեղեցիկ գորգերը, զանազան մուշտակները և այլ իրերը։

Ժողովրդական տնտեսության բնագավառում ձեռք բերած իրենց խոշոր հաջողություններով ցուցահանդեսում աչքի ընկնող

տեղ են գրավում միութենական ռեսպուբլիկաները։

Հայկական ՍՍՌ-ի պավիլիոնի սրահներում ցուցադրված են մեքենաշինության և մետաղամշակման արդյունաբերության էքսպոնատներ, նոր կոնստրուկցիայի տրանսֆորմատորներ, գեներատորներ և ղեկավարման վահաններ։ Աչքի ընկնող տեղ են գրավում Ֆ. Է. Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի և ֆրեզերային հաստոցների գործարանի բոլորովին նոր և կատարելագործված արտադրանքը։ Լենինականի մեխանիկական գործարանի մամլիչները, Կիրովականի էլեկտրական և ջերմային պրոցեսների ավտոմատ վերահսկողության սարքեր, Երևանի էլեկտրաճշգրիտ գործիքների գործարանի տարբեր տեսակի էլեկտրաչափիչ գործիքներ և արդյունաբերության արտադրանքի ուրիշ բազմաթիվ տեսակներ։ Այցելուների ուշադրությունն է գրավում բրդյա նուրբ գործվածքեղենի կոմբինատի և մետաքսի կոմբինատի գործվածքների ցուցադրված նմուշները՝ ճաշակով կարված կոստյումներ, վերարկուներ, կոշիկներ, տրիկոտաժային արտադրանքը և այլն։

Արդյունաբերության արտադրանքի հետ միասին պավիլիոնում լայնորեն ցուցադրված



են նաև մեր ռեսպուբլիկայի գյուղատնտեսության, մասնավորապես անասնաբուծության և այգեգործության բնագավառում ձեռք բերած հաջողությունները։ Լայն տեղ է հատկացված գիտության, կուլտուրայի և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերի նվաճումներին։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսը, որը բացվել է Մոսկվայում, ոչ միայն հանրագումարի է բերում այն խոշոր նվաճումները, որ կարճ ժամանակամիջոցում ձեռք է բերել մեր երկիրը, այլև ցույց է տալիս այն հնարավորություններն ու ռեզերվները, որ ունի մեր երկիրը իր հետագա զարգացման ճանապարհին։

---

# ՖԻԶԿՈՒԼՏՈՒՐՆԻԿԻ ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ՕՐԸ

Վ. ՄԱՐՏԻԿՅԱՆ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարին տված իր զեկուցման մեջ ՍՄԿՊ Կենտկոմի Առաջին քարտուղար ընկեր Ն. Ս. Խրուշչովը խոսելով սոցիալիստական պետականության զարգացման մեջ գլխավոր ուղղության՝ դեմոկրատիայի ամեն կերպ ծավալման մասին, նշեց. «Մինչև այժմ մեր երկրում ֆիզկուլտուրային շարժման ղեկավարումը իրականացվում էր պետական օրգանի՝ ֆիզիկական կուլտուրայի և սպորտի գործերի կոմիտեի կողմից։ Այժմ գտնված է ֆիզկուլտուրային շարժումը կազմակերպելու ավելի նպատակահարմար ձև, որի դեպքում վճռական դեր կխաղան ֆիզկուլտուրային շարժմանը մասնակցող հասարակական կազմակերպությունները։ Ստեղծվում է Կամավոր սպորտային ընկերությունների միություն, որը



կլինի ոչ թե պետական, այլ հասարակական օրգան»։

Սոցիալիստական էկոնոմիկայի համակողմանի զարգացման հետ միաժամանակ յոթնամյակի տարիներին շատ գործ պետք է արվի նաև ֆիզիկական կուլտուրայի և սպորտի զարգացման բնագավառում։ Չէ՞ որ կոմունիստական հասարակարգում մարդիկ պետք է լինեն հոգեպես ավելի հարուստ, բարոյապես ավելի մաքուր և ֆիզիկական ավելի բարձր կատարելության հասած։

«Յուրաքանչյուր մարդ կարող է և պետք է լինի ուժեղ»։ Պրոլետարական մեծ գրող Մ. Գորկու այս խոսքերը կարծես թե ուղղված են մեր երիտասարդներին, կոմունիզմի շինարարներին։ Ո՞ւմ համար պարզ չէ, որ ուժեղ մարդիկ, արագ և ավելի լավ կկատարեն մեր երկրի առջև դրված հսկայական խնդիրները։

ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի վերը հիշատակված որոշմամբ վերացվեց Մինիստրների Սովետին առընթեր Ֆիզիկական կուլտուրայի և սպորտի կոմիտեն և ստեղծվեց հասարակական նոր կազմակերպություն՝ Սպորտային ընկերությունների և կազմակերպությունների միություն, որն իր ամբողջ աշխատանքում հենվում է

ֆիզկուլտուրային լայն մասսաների ստեղծագործական նախաձեռնության և ինքնագործունեության վրա։ Այն աշխատում է պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ, արհմիությունների և կոմերիտմիության ակտիվ մասնակցությամբ։

Պարտիան և կառավարությունը նորաստեղծ սպորտային միության գլխավոր խընդիրն են համարում. ֆիզիկական կուլտուրայի և սպորտի հետագա մասսայական զարգացումը՝ որպես երիտասարդության կոմունիստական դաստիարակության կարևոր միջոցներից մեկը, աշխատավորության առողջության ամրապնդումը և նրա նախապատրաստումը բարձր արտադրողական աշխատանքի և Հայրենիքի պաշտպանության։

Իսկ դրա համար մեզանում այժմ ստեղծված են բոլոր անհրաժեշտ պայմանները։ Այդ մասին պերճախոս վկայում են հետևյալ փաստերը։ Պարտիայի Կենտկոմի 1948 թ. «Ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման մասին» որոշումից հետո անցած տասը տարիների ընթացքում մեր երկրում ֆիզկուլտուրային կոլեկտիվների թիվը 139 հազարից աճել է 190 հազարի, իսկ ֆիզկուլտուրնիկների թիվը՝ 7,8 միլիոնից հասել է 20,3



միլիոնի։ Այդ նույն ժամանակաշրջանում Սովետական Հայաստանում ստեղծվել են 800 նոր կոլեկտիվներ, 100 հազարով ավելացել է ֆիզկուլտուրնիկների թիվը։ Այժմ մենք ունենք 2.386 ֆիզկուլտուրային կոլեկտիվ, որոնք միավորում են 174.861 ֆիզկուլտուրնիկ։

Վերջին տասը տարում մեծ հաջողություններ են ձեռք բերվել սպորտի բնագավառում։ Չորս անգամով աճել է ռեսպուբլիկայի կարգային սպորտսմենների թիվը։ Այժմ մեր սպորտային կազմակերպություններում կան 13 սպորտի վաստակավոր վարպետ, 194 սպորտի վարպետ և 32.841 կարգային։

Միայն 1958 թվականին, ՍՍՌՄ ժողովուրդների սպարտակիադայի նախապատրաստության ընթացքում ռեսպուբլիկայում պատրաստվեց 47 սպորտի վարպետ։

Ավելի պերճախոս են թվերը միութենական մասշտաբով։ Այսպես. եթե 1949 թվականին պատրաստվել էր 335 սպորտի վարպետ, ապա 1958 թվականին դասակարգման նոր նորմաների համաձայն պատրաստվեց 2.878 վարպետ, այսինքն 9 անգամ ավելի։

Տասը տարվա ընթացքում սովետական սպորտսմենները սահմանել են 3.954 համամիութենական ռեկորդ, որից 695-ը գերա-

զանցում են համաշխարհային ռեկորդները։

Ռեսպուբլիկայում զգալի աշխատանք է կատարվել սպորտային բազաների ստեղծման ուղղությամբ։ Եթե 1948 թվականին ունեինք երեք ստադիոն, ապա այդ թիվը այժմ հասել է 10-ի, եթե սպորտային բոլոր տեսակի հրապարակների թիվը տաս տարի առաջ 607 էր, ապա այժմ 2.708 է։ Սպորտային 85 դահլիճների փոխարեն այժմ կա 200 սպորտային դահլիճ։

Հայաստանում այժմ աշխատում են բարձրագույն կրթություն ունեցող ֆիզկուլտուրայի 800 մասնագետներ։ Բայց մեր ֆիզկուլտուրային շարժման ուժը ամենից առաջ նրա ինքնագործունեության մեջ է։ Դրա վառ վկայությունն է հենց այն փաստը, որ մեզանում ֆիզկուլտուրայի և սպորտի ամենօրյա աշխատանքին մասնակցում են 7.800 հասարակական հրահանգիչներ, մարզիչներ, դատավորներ։

Մեծ հաջողությունների են հասել ռեսպուբլիկայի անվանի սպորտսմենները։ Նրանցից Վլադիմիր Ենգիբարյանը, Հրանտ Շահինյանը, Իգոր Նովիկովը, Ալբերտ Ազարյանը, Նորիկ Մուշեղյանը, Վարդան Հովսեփյանը, Վալենտին Չերնիկովը և ուրիշներ հաջողությամբ են հանդես եկել աշխարհի, Եվրոպայի,



Միության առաջնություններում, միջազգային մրցումներում և նվաճել 47 ոսկե, 19 արծաթե մեդալ։ Այս շատ ավելի է, քան Եվրոպայի մի շարք երկրների սպորտսմենների նվաճումները։ Միայն 1958 թվականին մեր սպորտսմենները աշխարհի, Եվրոպայի և Միության առաջնություններում նվաճեցին 27 ոսկե, 5 արծաթե և 1 բրոնզե մեդալ։ Իգոր Նովիկովը (ժամանակակից հնգամարտ), Ալբերտ Ազարյանը (սպորտային մարմնամարզություն) կրկին նվաճեցին աշխարհի չեմպիոնի կոչումը։ Վլադիմիր Ենգիբարյանը 1958 թվականին նվաճեց ՍՍՌՄ չեմպիոնի կոչումը։ Իսկ վերջերս Շվեյցարիայում մասնակցելով Եվրոպայի բռնցքամարտի առաջնությանը երրորդ անգամ Երևան բերեց հաղթողի ոսկե մեդալը և ոսկե գոտին։ Փայլուն կերպով հանդես եկավ ազատ ոճի ըմբշամարտիկ Նորիկ Մուշեղյանը։ Նա դարձավ աշխարհի գավաթակիր և առաջին անգամ նվաճեց ՍՍՌՄ չեմպիոնի կոչումը։ Թեթևատլետ Վարդան Հովսեփյանը երկրի առաջնությունում նվաճեց չեմպիոնի կոչում և գնդի հրումից սահմանեց համամիութենական նոր ռեկորդ։

Զգալի աշխատանք է կատարված գյուղական երիտասարդության ֆիզիկական դաս-

տիարակության կազմակերպման ուղղությամբ։ Բավական է ասել, որ վերջին տասը տարվա ընթացքում կրկնապատկվել է գյուղական ֆիզկուլտուրային կոլեկտիվների թիվը՝ 929 հազարից գյուղական ֆիզկուլտուրնիկների թիվը հասել է մինչև 4,6 միլիոնի։ Կոլեկտիվներ են ստեղծված 50.068 կոլտնտեսություններում և 9.940 սովխոզներում ու ՆՏԿ-ներում։ Ուրախությամբ պետք է նշել, որ մեր ռեսպուբլիկայում հիմնականում կատարված է բոլոր կոլտնտեսություններում և սովխոզներում ֆիզկուլտուրային կոլեկտիվներ ստեղծելու պարտիայի առաջադրանքը։

Սովետական սպորտի հետագա զարգացման գործում մեծագույն իրադարձություն հանդիսացավ ՍՍՌՄ ժողովուրդների առաջին սպարտակիադան, որն անցկացվեց 1956 թվականին։ Այժմ մեր Հայրենիքի բոլոր ֆիզկուլտուրնիկներն ու սպորտսմեններր եռանդուն կերպով նախապատրաստվում են ՍՍՌՄ ժողովուրդների երկրորդ սպարտակիադային, որը տեղի կունենա այս տարվա օգոստոսին, մեր մեծ Հայրենիքի մայրաքաղաքում՝ Մոսկվայում։ Երկրի տարբեր անկյուններից Մոսկվա կգան սպորտի տարբեր ձևերից բարձր արդյունքների հասած մոտավորապես



10 հազար պատանիներ ու աղջիկներ։ Մրցումներում հանդես կգան 85 թիմեր։

Այժմ արդեն ամենուրեք ավարտվել են ռեսպուբլիկական սպարտակիադաները։ Այն կազմակերպված և հաջող անցավ նաև մեր ռեսպուբլիկայում։ Բավական է ասել, որ սպարտակիադայի փնջային և եզրափակիչ մրցումներին միայն մասնակցեցին 4.352 ֆիզկուլտուրնիկներ և սպորտսմեններ, իսկ նրա բոլոր մրցումների մասնակիցների թիվը՝ կազմեց 139.303։

Ինչպես սպարտակիադայի նախապատրաստության, այնպես և նրա անցկացման օրերին 25 սպորտսմեններ լրացրեցին սպորտի վարպետի, 143-ը՝ առաջին և 284-ը՝ երկրորդ կարգային նորմաները, սահմանվեց ռեսպուբլիկական 11 նոր ռեկորդ։

Այժմ Սովետական Հայաստանի սպորտսմենների հավաքական կոլեկտիվը մեկնել է Մոսկվա, ՍՍՌՄ ժողովուրդների երկրորդ սպարտակիադայի եզրափակիչ մրցումներին մասնակցելու։

ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը իրենց որոշման մեջ հատուկ ուշադրություն են դարձնում սովորող երիտասարդության ֆիզիկական դաստիարակությանը։ Այդ ուղղությամբ կատարված է զգալի

աշխատանք։ Բավական է ասել, որ 1959 թվականին մեր երկրի դպրոցներում գործում են 77 հազար ֆիզկուլտուրային կոլեկտիվ, որոնցում ընդգրկված են 9,6 միլիոն պատանիներ ու աղջիկներ։ 1954 թվականից սկսած անց են կացվում սովորողների համամիութենական սպարտակիադաներ։ Միայն 1958 թվականի սպարտակիադային մասնակցեցին մոտ 12 միլիոն դպրոցական։

Ֆիզիկական դաստիարակության ուղղությամբ մեծ աշխատանք է տարվում աշխատանքային ռեզերվների ուսումնական հաստատություններում։ Նրանցում սովորող 818 հազար աշակերտներից 625 հազարը «Աշխատանքային ռեզերվներ» կամավոր ընկերության անդամներ են։

Մեր ռեսպուբլիկայի դպրոցներում ստեղծված են 936 ֆիզկուլտուրային կոլեկտիվներ, որոնցում ընդգրկված են 78.434 աշակերտ, իսկ մանկական 79 սպորտ դպրոցներում պարապողների թիվը հասնում է 7.857 պատանու և աղջկա։

Դպրոցական ֆիզկուլտուրային աշխատանքների վրա դրական ազդեցին ՀԿՊ Կենտկոմի և Մինիստրների Սովետի ձեռնարկած մի շարք կոնկրետ միջոցառումները. դպրոցների մի զգալի մասում ֆիզկուլտուրայի ա-



ռարկայից մտցված է տղաների և աղջիկների անջատ ուսուցում, սահմանվել են սպորտային միասնական օրերը։ Անցած ուսումնական տարում կենսագործված այս միջոցառումների արդյունքը զգալի է։ Անհրաժեշտ է նոր ուսումնական տարում այդ հարցերին ավելի մեծ ուշադրություն դարձնել։

Պարտիայի Կենտկոմի և Մինիստրների Սովետի որոշման մեջ նշվում է աշխատավորների առողջության ամրապնդման գործում ֆիզկուլտուրային կազմակերպությունների մեծ դերի մասին։ Անհրաժեշտ է, որպեսզի արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, ֆիզկուլտուրային կոլեկտիվների և շրջանային խորհուրդների հետ միաժամանակ ավելի լայն թափ հաղորդեն արտադրական մարմնամարզությանը, տուրիզմին, ալպինիզմին, ձկնորսությանն ու որսորդությանը, անեն ամեն բան, որպեսզի մեր զբոսայգիները և պարկերը դառնան աշխատավորության հանգստի կազմակերպման իսկական օջախներ։

Բարձրացել է սովետական սպորտի հեղինակությունը՝ միջազգային արենայում։ Սպորտային բազմաթիվ պատվիրակություններ եղել են արտասահմանում, շատ-շատերին էլ ընդունել մեզ մոտ։

Վերջին տարիներս միայն մեր ռեսպուբլիկայի սպորտսմենները միջազգային ընկերական հանդիպումներ են անցկացրել Չինաստանի, Բուլղարիայի, Ռումինիայի, Ալբանիայի, Հնդկաստանի, ԳԴՌ-ի, Լեհաստանի, Ֆինլանդիայի, Իրանի, Դանիայի, ըսպորտսմենների հետ։

Մեծ են այն խնդիրները, որ դրված են մեր ռեսպուբլիկայի սպորտային ընկերությունների և կազմակերպությունների միության խորհուրդների առջև։ Բավական է ասել, որ 1959—1960 թ. թ. ընթացքում մեր ռեսպուբլիկայում պետք է պատրաստվեն 174 սպորտի վարպետ, 1.321 առաջին, 3.490 երկրորդ, 13.075 երրորդ կարգայիններ։ Յոթնամյակի տարիներին պետք է կրկնապատկվի ֆիզկուլտուրնիկների թիվը, հասնելով 350—400 հազարի։

Պարտիայի և կառավարության առաջադրած խնդիրները մեր ռեսպուբլիկայի ֆիզկուլտուրային և սպորտային կազմակերպությունները անտարակույս կկատարեն, արհմիությունների և կոմերիտմիության հետ համագործակցված աշխատանքի շնորհիվ։

———



# ԻՆՉ Է ՏԱԼԻՍ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ

(Թվեր և փաստեր)

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսությունը չըտեսնված մեծ վերելք է ապրում։ Անշեղորեն կենսագործելով ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումները և ձեռնամուխ լինելով յոթնամյա պլանի կատարմանը, սովետական ժողովուրդը նորանոր հաջողություններ է ձեռք բերում արդյունաբերության և գյուղատնտեսության զարգացման, նորագույն տեխնիկայի արմատավորման բնագավառում։ Ահա մի քանի թվեր և փաստեր, որոնք համառոտակիորեն բնութագրում են այդ հաջողությունները։

☆ Եթե 1954—1958 թվականների ժամանակամիջոցում գյուղատնտեսությունն արդյունաբերությունից ստացել էր 644 հազար տրակտոր (կամ ավելի քան մեկ միլիոն տրակտոր 15 ուժանոցի վերածած), 361 հա-

զար հացահատիկային կոմբայն, 1 միլիոն 571 հազար բեռնատար ավտոմեքենա և այլ տեխնիկա, ապա յոթնամյակի ընթացքում գյուղատնտեսությունը ստանալու է մեկ միլիոնից ավելի տրակտոր, մոտավորապես 400 հազար հացահատիկային կոմբայն, մեծ քանակությամբ զանազան մեքենաներ, մեխանիզմներ և սարքավորումներ։

☆ Յոթնամյակի վերջում հիմնականում կավարտվի բոլոր կոլտնտեսությունների էլեկտրիֆիկացումը, իսկ սովխոզների էլեկտրիֆիկացումը կավարտվի ավելի շուտ։ Յոթնամյակի տարիներին գյուղատնտեսության կողմից էլեկտրաէներգիայի սպառումը կաճի գրեթե չորս անգամ. դա հնարավորություն կտա ավելի քան 19 միլիարդ ռուբլով կրճատելու գյուղատնտեսական մթերքների արտադրության ծախքերը, առաջընթաց հսկայական քայլ անելու կոլտնտեսային գյուղի կուլտուրայի հետագա զարգացման համար և կենցաղի բարելավման գործում։

☆ Յոթնամյա պլանով նախատեսված է բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը կոլտնտեսություններում՝ երկու անգամ, իսկ սովխոզներում՝ 55—60 տոկոսով։ Գյուղատնտեսության նյութա-տեխնի-



կական մատակարարման մեջ տեղի կունենան հսկայական փոփոխություններ։

☆ Գյուղատնտեսության արտադրության բարձրացման, մթերքների ինքնարժեքի իջեցման գործում կարևոր նշանակություն ունի կախովի և կիսակախովի գործիքների ներդրումը։ Մինչև 1959 թվականի հունվարի 1-ը երկրում կար մոտավորապես 550 հազար կցովի գութան ԴՏ—54 տրակտորների համար։ Կցովի գութանի քաշը 1.250 կիլոգրամ է, իսկ կախովինը՝ 550 կիլոգրամ։ Հետևաբար, եթե բոլոր գութանները կախովի լինեին, ապա մետաղի ընդհանուր խնայողությունը կկազմեր 380 հազար տոննա։ Անցումը դեպի տրակտորային կախովի գութանները, կուլտիվատորները, հացահատիկային և եգիպտացորենի շարքացանները թույլ կտան յուրաքանչյուր տարի ազատել մոտավորապես 200 հազար գյուղատնտեսական աշխատող։

☆ Եթե 1957 թվականին արդյունաբերությունը պատրաստում էր 208 անուն գյուղատնտեսական մեքենաներ, ապա յոթնամյակի վերջում կպատրաստվի 550 անունից ավելի, այդ թվում 350-ից ավելի նոր կոնստրուկցիայի։

☆ Սոցիալիստական արդյունաբերությունը

ընթացիկ յոթնամյակում կոլտնտեսություններին և սովխոզներին պետք է մատակարարի շարժական ցիստերներ՝ տափաստանային արոտավայրերի համար, կերի բետոնե մսուրներ և խմոցներ՝ ջրատար առվակներով։ Մեխանիզատորները մշակում են ֆերմաների և արոտավայրերի համար ջրամատակարարման այնպիսի միջոցներ, որ ինչքան հնարավոր է քիչ մետաղյա խողովակներ օգտագործվեն։ Կաթնաանասնապահության արտադրական ծախքերի կրճատման նպատակով կոլտնտեսություններին պետք է տրամադրվեն կոմպլեկտ սարքավորումներ կովերի մեքենայական կթի համար։

☆ Յոթնամյակի տարիներին գյուղատնտեսությունը հնարավորություն կստանա նոր տրակտորների և գյուղատնտեսական մեքենաների միջոցով անցկացնել հողի նախացանքային մշակումը և վաղահաս գարնանացան կուլտուրաների ցանքը՝ 8 աշխատանքային օրում, բամբակենու, արևածաղկի, եգիպտացորենի և կարտոֆիլի միջշարքային մշակումը՝ 8—10 օրում, հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը անջատ եղանակով՝ 9 օրում, ճակնդեղինը և կարտոֆիլինը՝ 20 օրում, վուշինը՝ 8—9 աշխատանքային օրում։



☆ Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման գործում խոշոր նշանակություն ունի հանքային պարարտանյութերի արտադրությունը։ Յոթնամյա պլանով նախատեսված է հանքային պարարտանյութերի արտադրությունը 1965 թվականին հասցնել 35 միլոն տոննայի՝ 1958 թվականի 12 միլիոն տոննայի դմաց, ըստ որում զգալիորեն կընդլայնվի քիմիական արտադրանքի ասորտիմենտը։ Կավելացվի խտացրած հանքային պարարտանյութերի, գյուղատնտեսական կուլտուրաների վնասատուների և հիվանդությունների դեմ պայքարելու առավել արդյունավետ ֆոսֆորա-օրգանական պրեպարատների արտադրությունը։

☆ Արդյունաբերությունը գյուղատնտեսությանը մատակարարում է ոչ միայն մեքենաներ և գործիքներ, այլև կերեր։

☆ Սերմացու եգիպտացորենի մշակման համար արդեն կառուցված են և աշխատում են 16 հատուկ գործարաններ, իսկ մոտակա ժամանակում կավարտվի նաև 25 այդպիսի գործարանների կառուցումը։

---

## ԼԵՀ ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԳԱՅԻՆ ՏՈՆԸ

*Հուլիսի 22-ը լեհ ժողովրդի ազգային վերածնության տոնն է։ Լեհ ժողովրդի հետ միասին նրա վերածնության օրը տոնում են Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրների աշխատավորները։*

*1944 թվականի հուլիսի 22-ին ազատարար Սովետական Բանակը, լեհական զորքերի հետ միասին, Լեհաստանից դուրս վռնդեց ֆաշիստական օկուպանտներին։ Ստեղծվեց ազատ, անկախ, դեմոկրատական լեհական պետություն։ Վերցնելով իշխանությունը իր ձեռքում, լեհ աշխատավորները շատ կարճ ժամանակամիջոցում վերականգնեցին պատերազմի հետևանքով քայքայված տնտեսությունը և իրագործեցին արմատական վերափոխություններ երկրի քաղաքական և սոցիալ-տնտեսական կյանքում։*

*Ժողովրդական իշխանության անցած 15 տարվա ընթացքում լեհ ժողովուրդը պայքարի և հաղթանակների փառավոր ուղի է ան-*



*ցել։ Լեհաստանում հաջողությամբ իրագործվում է սոցիալիզմի կառուցումը։ Եթե նախապատերազմյան Լեհաստանը տնտեսապես հետամնաց և իմպերիալիստների կողմից դաժանորեն շահագործվող երկիր էր, ապա այսօր Լեհաստանը իր ժողովրդի անձնվեր աշխատանքի, Սովետական Միության անշահախնդիր օգնության շնորհիվ դարձել է Եվրոպայի խոշորագույն ինդուստրիալ տերություններից մեկը։*

*Բավական է նշել, որ Ժողովրդական Լեհաստանի արդյունաբերության համախառն արտադրանքը 1958 թվականին, նախապատերազմյան 1938 թվականի մակարդակը գերազանցեց 5,5 անգամ։ Բարձր զարգացման հասավ երկրի ազգային եկամուտը։ 1938 թվականի համեմատությամբ, 1958 թվականին, ազգային եկամուտը աճեց 2,7 անգամ։ Ազգային եկամտի աճման գործում հիմնական դերը պատկանում է ծանր արդյունաբերության բուռն զարգացմանը։*

*Ժողովրդական իշխանության հաստատումից հետո լեհ ժողովուրդը ձեռնամուխ եղավ առաջին եռամյա պլանի (1947—1949) կենսագործմանը։ Այդ պլանը կատարվեց 2 տարի 10 ամսում։ Հաջողությամբ կատարվեց նաև 6-ամյա պլանը (1950—1955)։ Այս*

տարիներին առանձնապես բարձր զարգացման հասավ Լեհաստանի ծանր արդյունաբերությունը։ Այսպես, օրինակ, եթե 1937 թվականին ածխի հանույթը կազմում էր 36 միլիոն տոննա, ապա 1958 թվականին այն հասավ 95 միլոն տոննայի։ Պողպատի ձուլումը 1932 թվականի մեկ միլիոն 466 հազար տոննայից 1958 թվականին հասավ 5 միլիոն 600 հազար տոննայի։ Նույն ժամանակամիջոցում էլեկտրաէներգիայի արտադրությունը ավելացավ ավելի քան 7 անգամ, այսինքն 3 միլիարդ 628 միլիոն կիլովատ-ժամից հասավ 23 միլիարդ 9 միլիոն կվ. ժամի։ Մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի մի շարք ճյուղերի արտադրության տեսակետից Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկան անցավ ԳՖՌ-ից, Ֆրանսիայից և Իտալիայից։ Օրինակ, եթե 1937 թվականին յուրաքանչյուր մեկ շնչին Լեհաստանում ընկնում էր 1054 կգ. ածուխ, իսկ Ֆրանսիայում՝ 1076 կգ., ապա 1958 թվականին Լեհաստանում այն հասավ 3.300 կգ., իսկ Ֆրանսիայում՝ 1.299 կգ.։ Եթե 1937 թվականին Լեհաստանում յուրաքանչյուր մեկ շնչին ընկնում էր 43 կգ. պողպատ, Իտալիայում՝ 49 կգ., ապա 1958 թվականին Լեհաս-



տանում այն հասավ 196 կգ.-ի, Իտալիայում՝ 129 կգ.-ի։

Այս թվերը ցույց են տալիս սոցիալիստական պլանային տնտեսության առավելությունները բուրժուականի նկատմամբ։ Ժողովրդական Լեհաստանում ստեղծվել են արդյունաբերության այնպիսի նոր ճյուղեր, ինչպիսիք են տրակտորաշինությունը, ավտոմոբիլաշինությունը, նավաշինությունը և արտադրության շատ ուրիշ ճյուղեր։ Վերջին տարիներս այստեղ շարք մտան տասնյակ խոշոր արդյունաբերական օբյեկտներ, ինչպիսիք են Վ. Ի. Լենինի անվան մետալուրգիական կոմբինատը՝ Նովա-Գուտայում, Վարշավայի ավտոգործարանը, Պիոտրկովի տեքստիլ կոմբինատը, Կենձեժինի քիմիական կոմբինատը և այլ ձեռնարկություններ։

Բուռն թափով աճեցին թեթև և սննդի արդյունաբերության մի շարք ճյուղեր։

Լեհաստանը ժողովրդական իշխանության տարիներին մեծ հաջողություններ է ձեռք բերել գյուղատնտեսության զարգացման բնագավառում։ 1958 թվականին Լեհաստանը ցորենի և կարտոֆիլի արտադրությամբ աշխարհում գրավեց երկրորդ տեղը, ետ մնալով միայն ՍՍՌՄ-ից։ Հաջողությամբ զար-

գանում է շաքարի ճակնդեղի արտադրությունը, անասնապահությունը։

Անցած 15 տարիների ընթացքում աճել է քաղաքային բնակչությունը։ Միայն ինժեներների և տեխնիկների թիվը նախապատերազմյանի համեմատությամբ աճել է 6 անգամ։ 15 տարվա ընթացքում Հայաստանի բարձրագույն ուսումնական հաստատությունները երկրին տվել են 230 հազար մասնագետ։ Հաջողությամբ զարգանում է գիտությունը, կուլտուրան, արվեստը, որոնք դարձել են աշխատավորների լայն սեփականությունը։

Ժողովրդական իշխանության տարիներին ստեղծվեց հանգստյան տների, սանատորիաների, մանկապարտեզների, մանկամսուրների լայն ցանց։ Կառուցվեցին հազարավոր դպրոցներ, տասնյակ բարձրագույն ուսումնական հաստատություններ։ Հայաստանում յուրաքանչյուր 10.000 բնակչին ընկնում է 43 ուսանող, Ֆրանսիայում՝ 34, ԳՖՌ-ում՝ 24։

Մինչև 1960 թվականը երկրի արդյունաբերության արտադրանքը պետք է աճի 49 տոկոսով, իսկ գյուղատնտեսությանը՝ 25 տոկոսով։

Արագ թափով աճելու է ժողովրդի կենսա-



մակարդակը, 30 տոկոսով բարձրանալու է բանվորների աշխատավարձը, իսկ գյուղացիների եկամուտը աճելու է 25—30 տոկոսով։

Հայկական ժողովրդական ռեսպուբլիկայի համար զարգացման նոր հեռանկարներ են բացվում 1959—1965 թ. թ. յոթնամյա պլանով։ Բավական է ասել, որ 1965 թվականին, 1960 թվականի համեմատությամբ, արդյունաբերությունն աճելու է 80 տոկոսով, գյուղատնտեսությունը՝ 30—35 տոկոսով։

Այդ ժամանակամիջոցում երկու անգամ պետք է աճի քիմիական արդյունաբերության արտադրանքը։ 1965 թվականին պողպատի ձուլումը կհասնի 9 միլիոն տոննայի, այսինքը 6 անգամ ավելի շատ, քան 1938 թվականին։ Էլեկտրաէներգիայի արտադրանքը 1965 թվականին հասնելու է 43—45 միլիարդ կիլովատ-ժամի, կամ 12—13 անգամ ավելի շատ, քան մինչ պատերազմը։ 1965 թվականին Հայաստանում կարդյունահանվի 112—113 միլիոն տոննա ածուխ։

Նոր յոթնամյակում լայն թափով զարգանալու է նավթարդյունաբերությունը, մեքենաշինությունը, նավաշինությունը, թեթև և սննդային արդյունաբերությունը։

Յոթնամյակում լայն չափով զարգանալու է

*բնակարանային շինարարությունը։ Թավական է նշել, որ այդ ժամանակամիջոցում քաղաքներում պետք է կառուցվի 2 միլիոն բնակարան, իսկ գյուղական վայրերում՝ 1 միլիոն 200 հազար բնակարան։*

*Լեհ ժողովրդի ձեռք բերած մեծ հաջողությունները արդյունք են Սովետական Միության և լեհ ժողովուրդների անխախտ բարեկամության ու սերտ համագործակցության, որն ամրապնդվել և կոփվել է ֆաշիստական զավթիչների դեմ մղվող համատեղ ազատագրական պայքարում, հետպատերազմյան խաղաղ շինարարության տարիներին։*

*Սովետական Միության, Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, ինչպես նաև սոցիալիստական լագերի երկրների միջև կնքվել են բարեկամության, փոխադարձ օգնության և ետպատերազմյան համագործակցության ու տեխնիկա-տնտեսական և առևտրական պայմանագրեր։*

*Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկան, ինչպես նաև սոցիալիստական լագերի մյուս երկրները հետևողականորեն պայքարում են խաղաղությունն ամրապնդելու, միջազգային լարվածությունը թուլացնելու համար։*

Գ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

---



# ՊԱՐԻՏԵՏԱՅԻՆ ՀԻՄՈՒՆՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ստեփանավանի շրջանի Լեջան գյուղի Շահումյանի անվան կոլտնտեսության ագիտատոր Սանասար Շահնազարյանը դիմել է խմբագրությանը և խնդրել պարզաբանել, թե ինչ է նշանակում պարիտետային հիմունքներ: Պատասխանում ենք այդ հարցին:

*Իրավունքի, էկոնոմիկայի և մի շարք այլ բնագավառներում շատ գործածական է «պարիտետային հիմունքներ» հասկացողությունը։ Այն հաճախ է օգտագործվում նաև միջազգային հարաբերություններում։ Այդ հասկացողության իմաստը ճիշտ ըմբռնելու համար ամենից առաջ պետք է իմանալ, որ այն առաջ է եկել լատիներեն «պարիտաս» բառից, որը նշանակում է հավասարություն։ «Պարիտետային հիմունքները» մի ինչ որ հարց կամ կոնֆլիկտ լուծելու այնպիսի սկզբունք է, երբ շահագրգռված կողմերը հանդես են գալիս հավասար իրավունքնե-*

րով, շահերի փոխադարձ ճանաչման պայմանով։

Մեր երկրում լայնորեն հայտնի են այսպես կոչված գնահատող-կոնֆլիկտային հանձնաժողովները, որոնք պարիտետային հիմունքներով լուծում են աշխատանքային վիճելի հարցերը։ Այդ նշանակում է, որ եթե վեճը տեղի է ունենում որևէ ձեռնարկության և բանվորների միջև, ապա երկու կողմերից առանձնացվում են հավասար թվով ներկայացուցիչներ, որոնք հավասարության կամ պարիտետային հիմունքներով լուծում են տվյալ վեճը։

Պարիտետային հիմունքների սկզբունքը լայն կիրառում ունի նաև միջազգային տնտեսական և քաղաքական հարաբերությունների կարգավորման գործում։ Օրինակ, միջազգային դրամական հարաբերություններում պարիտետ է կոչվում տարբեր երկրների դրամական միավորների՝ օրենքով սահմանված այն հարաբերակցությունը, որն արտահայտվում է ոսկու մեջ։ Սովետական Միության վալյուտայի՝ ռուբլու պարիտետը հիմնված է ՍՍՌՄ կառավարության 1950 թվականի մարտի 1-ի այն օրենքով, որը սահմանում է, որ սովետական մեկ ռուբլին հավասար է 0,222168 գրամ մաքուր ոսկու։



Միջազգային քաղաքական հարաբերությունների բնագավառում պարիտետային հիմունքները տարբեր կողմերի իրավահավասարության սկզբունքն է այս կամ այն հարցը բանակցությունների միջոցով լուծելու ընթացքում։ Օրինակ, երկար ժամանակ է, ինչ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարությունը, ելնելով Գերմանիայի միասնականության վերականգնման շահերից, կոչ է անում ԳՖՌ-ի իշխանություններին հանդիպել և պարիտետային հիմունքներով լուծել գերմանական ժողովրդի համար այդ կենսական հարցը։ Բայց ԳՖՌ-ի ղեկավար շրջանները, որոնք ԱՄՆ-ի իմպերիալիստների աջակցությամբ մոլեգնորեն նախապատրաստվում են նոր պատերազմ սանձազերծելու, ինչպես ամբողջ սոցիալիզմի լագերի, այնպես էլ ԳԴՌ-ի դեմ, մերժում են բանակցություններ վարելու ամեն մի առաջարկություն, լինի դա պարիտետային սկզբունքներով թե մի այլ սկզբունքով։

Մ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ




Խմբագիր՝ Վ. Բ[illegible]ՆՈՒՆԻ

## СОДЕРЖАНИЕ

Стр.



**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 13 1959 г.**

*ՎՖ 05413 Պատվեր 450 Տիրաժ 8622*

---

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպեկ*